չափ մինչեւ միոյն տեղ հաւիւր բերես, եւ ես, եւ քո հայրենեաց կարօտ որդիքներ՝ ուրախ ուրախ վայելենք քո առատ ու շահեկան արդիւնքը ։

Քրիստոս իւր աջով զքեզ օրհնէ, ինչպէս օրհնեց իւր միշակ աշակերտները․ եւ դու երթալով պտղաբեր լինիս, եւ քո բարի պտուղն ու յիշատակ մնայ աշխարհիս վերայ ։

Ես քո հայր Սիրաք ամենայն խնամով աւանդեցի քեզ այս դասեր եւ դու երկիւղած հնազանդութեամբ լսեցիր․ բայց գիտցիր, որ միայն լսելով չես արդարանար․ այլ առնելով եւ ուսուցանելով․ եւ դու այժմէն ուխտ դիր որ իմ դասերս որդիքներուդ աւանդես եւ այսպէս յորդւոց յորդի, թողնէ ի թոռ շարունակուելով՝ անմոռաց եւ կենդանի կը մնայ Սիրաքայ հօրդ խրատներ ու դասեր․ որով տիրապէս կատարող կը լինիս Առակաց բանին․ «Որդեակ, զօրէնս իմ մի մոռանար եւ զբանն իմ պահեսցէ սիրտ քո, զի երկայնաւութք լիցիս ի վերայ երկրի ։ »



Վարէ՛, Որդեակդ իմ Սամուէլ,
Ուղիղ վարէ զմաճն եւ ակօս.
Արձակ դաշտերն են մեր արտեր,
Պարարտ բերուն եւ բարեբեր.
Եւ ես ցանեմ ցորնի հատեր,
Քաղենք յուսով բազմապատիկ.
Օրհնեա՛լ է հողն եւ սերմեր,
Օրհնեա՛լ՝ մշակք եղնամոլներ,
Օրհնեա՛լ է անդ եւ անդաստան,
Օրհնեա՛լ՝ Աստուած
Որ տայ անձրեւ եւ արեւ.
Օրհնեա՛լ՝ վաստակ երկրագործին,
Արդար ազատ ի զրկանաց.